## ԲՈՎԱՆԴԱԿՈՒԹՅՈՒՆ



---

Խմբագրության հասցեն.— Երևան, ՀԿ(բ)Պ Կենտկոմ, Պրոպագանդայի և ագիտացիայի բաժին, հեռախոս՝ 2—52—78։

# ՄԱՍՍԱՅԱԿԱՆԱՑՆԵԼ ԱՐՏԱԴՐՈՒԹՅԱՆ ՆՈՐԱՐԱՐՆԵՐԻ ԱՇԽԱՏԱՆՔԻ ՓՈՐՁԸ

Հետպատերազմյան ստալինյան հնգամյա պլանի հաջող կատարման և արտադրողականության բարձրացման համար խոշոր նշանակություն ունի արտադրության առաջավորների փորձի մասսայականացումն ու կիրառումը։ Շատ ագիտկոլեկտիվներ, ճիշտ հասկանալով իրենց անելիքները, ժամանակին ամփոփում են արտադրության առաջավորների աշխատանքի փորձը և այն դարձնում լայն մասսաների սեփականությունը։

Կիրովի անվան գործարանի այն ցեխը, որի պետն է ընկ. Կ. Խուդոյանը և պարտկազմակերպության քարտուղար ընկ. Ա. Գասպարյանը, մտնելով սոցիալիստական մրցության մեջ, անցյալ տարվա նույն ժամանակվա համեմատությամբ, այս տարի արտադրողականությունը բարձրացրել է 10,6 տոկոսով, իսկ արտադրանքի որակը՝ 5,5 տոկոսով։

Ի՞նչպես է ցեխը հասել այս հաջողությունների։ Ցեխի պետ ընկ. Խուդոյանի ռացիոնալիզատորական առաջարկի շնորհիվ հնարավորություն է ստեղծվել արտադրողականությունը բարձրացնել միջին հաշվով 30 տոկոսով։ Ագրեգատի ապարատչիկները մեկ ապարատի փոխարեն ղեկավարում են 2, իսկ երբեմն 3 ապարատ։ Ստախանովական Ռայիսա Զիրկովան, որը վարում է 3 ապարատ, յուրաքանչյուր ագրեգատի պլանը կատարում է 190, իսկ Աննա Չերտարյովան և Աննա Չերեդովան, սպասարկելով 2—3 ագրեգատ, օրվա առաջադրանքը կատարում են 230—250 տոկոսով։

Արտադրության այս առաջավորների փորձը մասսայականացնում են ագիտատորները։ Ցեխային պարտկազմակերպության և ագիտատորների նախաձեռնությամբ կազմակերպվել է ստախանովականների հավաք, որտեղ հետաքրքիր զեկուցումներ են լսվել արտադրության առաջավորների փորձի ու աշխատանքային մեթոդների մասին։

Լույս է ընծայվել հատուկ գրքույկ՝ «Կիրովի գործարանի 1949 թ. արտադրության առաջավորների փորձը» վերնագրով, որն ուսումնասիրվում է բանվորների և ինժեներատեխնիկական աշխատողների կողմից։



Ավտոդետալ գործարանում նորարար բանվորները մեծ թիվ են կազմում։ Երբ ռացիոնալիզատորը որևէ նորամուծություն է կատարում, գործարանի դիրեկցիան անմիջապես ձեռնամուխ է լինում դրա ուսումնասիրությանը, օգնում է նորարարին. պատրաստում են դիագրամներ, գծագրեր, ապա մանրամասն գրի առնում այդ առաջարկության ամբողջ բովանդակությունը և մասսայականացնում ագրեգատներում ու ցեխերում։

Անվանի ռացիոնալիզատոր Ռադիկ Մելիքյանը արտադրության տեմպն արագացնելու նպատակով արել է չափազանց արժեքավոր առաջարկություն։ Որպեսզի բանվորը չսպասի այնքան ժամանակ, որ դազգահը օպերացիան լրիվ ավարտելուց հետո ինքն իրեն կանգնի, նա ստեղծեց մեխանիկական արգելակ, որը հնարավորություն է տալիս ցանկացած ժամանակ կանգնեցնելու պտտվող դետալը։ Այդ առաջարկությունը հնարավորություն է տվել ինչպես Մելիքյանին, այնպես էլ մի քանի ուրիշ ստախանովական բանվորների 13 հազար ավտոդետալի փոխարեն տարեկան արտադրել 130 հազար ավտոդետալ։

17-ամյա նորարար, կոմերիտական Բա-

լյան Մարգարյանն, աշխատելով 3 հաստոցի վրա, արտադրական լուրջ հաջողությունների է հասել։ Նա գործարանում արմատավորել է «անընդհատ հոսանքային սիստեմ», որը տասն անգամ արագացնում է աշխատանքի պրոցեսը։

Գործարանի նորարարների աշխատանքի մեթոդները արագորեն արմատավորվում են։ Նրանք հաճախակի դասախոսություններ և հետաքրքրական զրույցներ են կազմակերպում բանվորների համար։ Գործարանի բոլոր ցեխերում և ագրեգատներում փակցված են բազմաթիվ հարուստ պլակատներ, որոնք ցույց են տալիս գործարանի նորարարների առաջարկությունների էությունը։ Ագիտատորները կազմակերպում են զրույցներ արտադրության առաջավորների աշխատանքի մեթոդների շուրջը, պատի թերթերում տպագրում են հատուկ հոդվածներ։

Կարի 1-ին ֆաբրիկայի մի շարք ագրեգատներ աշխատում են Ստալինյան մրցանակի լաուրեատ Ջուտկինի մեթոդով և կենսագործում են Մոսկվայի առաջավոր Կարի ֆաբրիկայի բանվորուհի Սոխավերովայի ինքնաստուգման մեթոդը։ Ռեսպուբլիկայի ձեռնարկություններում այդ մեթոդը արմատավորելու նպատակով, Հայկական ՍՍՌ



Թեթև արդյունաբերության մինիստրությունը հրատարակել է մի քանի բրոշյուրներ՝ առաջավոր բանվորների, ագրեգատների ու ցեխերի աշխատանքի լավագույն փորձի մասին։ Կարի 3-րդ ֆաբրիկայի ագիտատոր Հ. Աթաբեկյանը այդ բրոշյուրների օգնությամբ խորապես ուսումնասիրելով կարի արդյունաբերության առաջավոր բանվորների փորձը, այն մասսայականացնում է ֆաբրիկայի աշխատողների մեջ և օգնում նրանց արտադրական նոր վերելքի հասնելու համար։ Այն նոր մեթոդը, որով սկսել են աշխատել 3-րդ և 4-րդ ագրեգատները, հնարավորություն է տալիս բանվորներին աշխատանքի պրոցեսի հենց սկզբից ստուգելու միմյանց աշխատանքը։ Եթե տվյալ բանվորն իր հարևանից ստանում է անորակ արտադրանք, այն անմիջապես վերադարձնում է նրան՝ թերությունները արագորեն շտկելու համար։

Աշխատանքի ինքնաստուգման մեթոդի շնորհիվ հիշյալ ագրեգատների բանվորները իրենց արտադրական առաջադրանքները կատարում են կրկնակի չափով։ Օրինակելի աշխատանքի համար 4-րդ ագրեգատը, որը ղեկավարում է կոմունիստ Սիրուշ Դավթյանը, ստացել է գերազանց որակի ագրեգատի կոչում։ Այդ նույն ագրեգատի ստախա-

*նովական բանվորուհի Լենա Սիմոնյանը, որն աշխատում է 1953 թվի հաշվին, հաճախակի զեկուցումներ է կարդում ագրեգատում իր աշխատանքի մեթոդների մասին։ Լսելով ֆաբրիկայի առաջավոր բանվորների զեկուցումներն ու զրույցները, բազմաթիվ բանվորներ իրենց աշխատանքի մեջ սկսել են կիրառել ռացիոնալիզատորական նոր մեթոդներ, որոնք զգալի օգուտ են բերում գործարանին։*

*Սակայն կան նաև այնպիսի ագիտկոլեկտիվներ, որոնք չեն կազմակերպում արտադրության առաջավորների փորձի մասսայականացումը, շատ են աղմկում մի քանի անհատների սահմանած ռեկորդների մասին և անհրաժեշտ միջոցառումներ չեն ձեռնարկում արտադրության առաջավորների աշխատանքի լավագույն մեթոդները բոլորի սեփականությունը դարձնելու համար։*

*Ագիտկոլեկտիվները պարտիական, պրոֆմիութենական կազմակերպությունների օգնությամբ պետք է սիստեմատիկաբար հանրագումարի բերեն արտադրության նորարարների աշխատանքի փորձը և այն դարձնեն լայն մասսաների սեփականությունը։ Այդ կապակցությամբ անհրաժեշտ է հաճախակի քննության առնել առաջավորների*



*փորձի պրոպագանդայի հարցը, հրավիրել ժողովներ, հավաքներ, լսել նորարարների զեկուցումներն ու զրույցները՝ իրենց աշխատանքի փորձի և մեթոդների մասին։ Այդ գործում խոշոր դեր կարող են և պետք է խաղան արտադրական խորհրդակցությունները, եթե նրանք լավ նախապատրաստվեն և անցկացվեն բարձր մակարդակով։*

*Արտադրության առաջավորների փորձը մասսայականացնելու նպատակով, անհրաժեշտ է լայնորեն օգտագործել մամուլը, ռադիոն, կինոն, ստախանովյան դպրոցները, ցուցադրական ագիտացիան։*

*Անհրաժեշտ է մշտապես հիշել, որ արտադրության նորարարների աշխատանքի փորձի և մեթոդների ուսումնասիրությունն ու կյանքում կիրառելը հանդիսանում է կարևոր պայման՝ հաջողությամբ կատարելու առաջադրված խնդիրները։*



## ՅՈՒՐԱՔԱՆՉՅՈՒՐ ԲՐԻԳԱԴԱ ԿԱՐՈՂ Է ԴԱՌՆԱԼ ՍՏԱԽԱՆՈՎՅԱՆ

*Երևանի Մուլիտի գործարանը մեր ռեսպուբլիկայի առաջավոր ձեռնարկություններից է։ Նրա կոլեկտիվն այս տարվա մայիսին կատարեց իր հնգամյա պլանը և այժմ պայքարում է ռեսպուբլիկայի 30-ամյակը արտադրական նորանոր հաջողություններով դիմավորելու համար։*

*Գործարանի նվաճումների մեջ իրենց պատվավոր տեղն ունեն ագիտատորները։ Նրանք իրենց զրույցներն անց են կացնում նպատակասլաց, հետաքրքիր և կենդանի, հնարավորություն են ստեղծում, որպեսզի հենց զրույցի ժամանակ ունկնդիրները հանդես գան և պատմեն իրենց մոտ եղած դրական փորձի մասին, խոսեն թերությունների և նրանց վերացման միջոցառումների մասին։*

*Օրերս ագիտատոր ընկ. Գուրգեն Բաղյանը անցկացրեց իր հերթական զրույցը հետևյալ թեմայով.* «Յուրաքանչյուր բրիգադա կարող է լինել ստախանովյան»։



*Ահա այդ զրույցի համառոտ շարադրանքը։*

*— Մեր գործարանի շատ բանվորներ այժմ դարձել են անվանի ստախանովականներ,— իր զրույցն սկսեց Բաղյանը։ Վերցնենք, որպես օրինակ, ձուլման ցեխի առաջին բրիգադայի անվանի վարպետ, բրիգադիր Վարդգես Սրմոյանին։ Դուք գիտեք, որ ոչ միայն Սրմոյանը, այլև նրա բրիգադայի բոլոր բանվորները ստախանովականներ են։ Նրա բրիգադան արժանացել է արտադրանքի գերազանց որակի բրիգադայի կոչման և պատվով է արդարացնում իր այդ կոչումը։ Իսկ ինչպե՞ս նա և իր բրիգադայի բանվորները դարձան ստախանովական և արժանացան արտադրանքի գերազանց որակի բրիգադայի կոչման։*

*— Իհարկե լավ աշխատանքի շնորհիվ,— պատասխանեց ունկնդիրներից մեկը։*

*— Քիչ է ասել՝ «լավ աշխատանքի շնորհիվ»,— շարունակեց Բաղյանը։ Այդ հարցին պատասխանելու համար պետք է մոտիկից ծանոթանալ այդ բրիգադայի աշխատանքներին։ Ես վերջերս եղել եմ բրիգադայում և ուզում եմ ձեզ պատմել նրա աշխատանքի փորձի մասին։*

*Վարպետ Սրմոյանը հատուկ ուշադրություն*

է դարձնում աշխատանքի կազմակերպման գործին։ Նա խնամքով նախապատրաստում է բանվորական տեղը։ Ամեն օր, դեռ աշխատանքն սկսվելուց առաջ, նա լինում է իր աշխատավայրում, ուշադիր ստուգում է գործիքների վիճակը, դասավորում դրանք իրենց տեղերում, լրացնում պակասը, այնուհետև նա ուշադիր ստուգում է կամրջային կռանը, նրան հետաքրքրում է այն հարցը, թե մեքենան պատրա՞ստ է ապահովելու հերթափոխի անխափան աշխատանքը։ Ապա վարպետ Սրմոյանը ստուգում է վառարանի հարմարանքները, նախապատրաստում նրանց անփոխան աշխատանքի։ Իսկ դուք գիտե՞ք, ինչ նշանակություն ունի այդ նախապատրաստական աշխատանքը։

— Շատ մեծ նշանակություն,— տեղից ասաց բանվորներից մեկը։ Դրա շնորհիվ բանվորը աշխատանքը կսկսի ճիշտ ժամանակին, չի զբաղվի նախապատրաստական աշխատանքով և պարզ է, որ շատ և լավորակ արտադրանք կտա։

Օգտագործելով Կորաբելնիկովայի աշխատանքի փորձը, վարպետ Սրմոյանը շարունակաբար խնայում է հումքը՝ շիխտան։ Ինչպե՞ս է նա այդ անում։ Վարպետ Սրմոյանը և նրա բրիգադայի բանվորները խնամքով



հավաքում են հումքի ավելցուկները, պաշտպանում, որպեսզի այն չաղտոտվի այլ նյութերով, դրանով հնարավոր դարձնում, որ այդ հումքի ավելցուկները նորից օգտագործվեն։ Ձուլման ցեխում ապրիլ ամսում տնտեսած հումքը կազմեց 10 տոննա, իսկ դա նշանակում է լրացուցիչ հինգ տոննա մույխ։

— Այդ ճիշտ է,— ընդհատելով ագիտատորին, ասաց ձուլող վարպետ Պետրոս Բաղալյանը։ Մենք, օրինակ, նույնպես տրնտեսած հումքի հաշվին լրացուցիչ մույխ ենք տվել և կարող ենք է՛լ ավելի տալ, հասնելով այն բանին, որ ամսվա մեջ թեկուզ մեկ օր աշխատենք տնտեսած հումքի հաշվին։

— Դրան ոչ միայն մեր, այլև ցեխի բոլոր բրիգադաները պետք է հասնեն։ Ձուլման ցեխում ստախանովյան կոչմանն արժանանալու համար այդ մեթոդի կիրառումը կարևոր նախապայմաններից մեկն է։

— Ես հաշվել եմ,—զրույցին մասնակցելով, ասաց ձուլող վարպետ Լյուդվիգ Ղազարյանը,— որ երկու վառարանով աշխատելու դեպքում մենք ամսական կարող ենք հումքի տնտեսման միջոցով ստանալ լրացուցիչ 10—12 տոննա մույխ, դա մոտ 30 հազար ռուբլի կկազմի։

— Իհարկե հնարավոր է,— հաստատեց ագիտատորը։ Ամեն մի բանվոր հենց պետք է պայքարի առավել չափով հումքի խնայման և, հետևաբար, ավելի շատ լրացուցիչ մուլիտ տալու համար։

Սակայն ստախանովյան կոչում ստանալու համար, բացի ռացիոնալ աշխատանքից, նյութեր խնայելուց, անհրաժեշտ է նաև Զուտկիխի օրինակով պայքարել արտադրանքի բարձր որակի համար։ Այդ հարցում էլ վարպետ Սրմոյանը և նրա բրիգադայի բանվորները լավագույն աշխատանքի օրինակ են տալիս։

Ինչպե՞ս են նրանք ապահովում բարձրորակ մուլիտի արտադրանքը։

Վարպետ Սրմոյանը, ամենից առաջ հատուկ հոգ է տանում, որպեսզի շիխտան պատրաստվի համաձայն սահմանված տեխնոլոգիական նորմատիվների, քիմիական ճիշտ անալիզի հիման վրա։ Իսկ դա չափազանց կարևոր պայման է բարձրորակ արտադրանք ստանալու համար։ Բացի այդ, նա ուշադիր հետևում է, որպեսզի ձուլման պրոցեսում շիխտան չխառնվի մուլիտի ձուլվածքին։ Այդ ապահովում է բարձրորակ արտադրանք։ Որպես արդյունք այդ միջոցառում-



ների, նրա բրիգադան մշտապես արտադրում է առաջին կարգի մուլիտ։

Բարձրորակ արտադրանք տալու համար,— շարունակեց իր զրույցը Բաղյանը,— բանվորն ինքը պետք է լինի որակյալ։ Այդ հարցին նույնպես մեծ ուշադրություն է դարձնում վարպետ Սրմոյանը։ Նա ոչ միայն մտահոգվել է, որպեսզի իր բրիգադայի բոլոր բանվորները հանձնեն տեխմինիմումը, այլև հենց արտադրության պրոցեսում նա սովորեցնում է իր բանվորներին, տեղնուտեղն ուղղում նրանց սխալները։ Նա իր բրիգադայի բանվորներին սովորեցնում է նաև հենց իր անձնական աշխատանքի օրինակով։ Սրմոյանը բանվորների գիտակցությանն է հասցրել այն ճշմարտությունը, որ չի կարելի ստախանովյան կոչում ստանալ, առանց անընդհատ որակավորվելու։

Ես,— ամփոփելով իր զրույցը, ասաց ագիտատոր Բաղյանը,— վարպետ Սրմոյանի և նրա բրիգադայի փորձից բացի, կարող էի ձեզ պատմել նաև ձուլման ցեխի երկրորդ բրիգադայի մասին, որը գերազանց որակի արտադրանք տալու հարցում սկսել է հաջողությամբ մրցել վարպետ Սրմոյանի բրիգադայի հետ, ինչպես նաև այլ առաջավորների մասին. սակայն բերած օրինակը մեզ լիո-

վին համոզում է, որ ստախանովական կարող են դառնալ մեր գործարանի բոլոր բանվորները, եթե աշխատեն մեր երկրի առաջավոր ձեռնարկությունների մարդկանց աշխատանքային մեթոդներով։ Չէ՞ որ հնարավորությունները գործարանում նույնն են։ Մեր բրիգադան, որ սիստեմատիկաբար կատարում է իր արտադրական պլանները, ունի բոլոր պայմանները նույնպես արժանանալու արտադրանքի գերազանց որակի բրիգադայի կոչմանը, որը դեռ մենք չունենք։ Մեր խնդիրը պետք է լինի համառ կերպով պայքարել այդ կոչման համա՛ր։ Ես կարծում եմ, որ մենք դրան կհասնենք։

— Անպայման կհասնենք,— հաստատում համոզված ասացին բրիգադայի բոլոր բանվորները։



## ՄԻՉՈՒՐԻՆՅԱՆ ՍՈՐՏԵՐԻ ՏԱՐԱԾՄԱՆ ՀԱՄԱՐ

Կիրովականը ռեսպուբլիկայի այն շրջաններից է, ուր գնալով ավելի ու ավելի մեծ ծավալ է ստանում պտուղների միչուրինյան տեսակների ներդնումը։ Այս կարևոր գործում կոլխոզնիկներին մեծ օգնություն կարող են ցույց տալ ագրոնոմները, որոնք պետք է հանդիսանան միչուրինյան առաջավոր գիտության մասսայականացնողները գյուղում։

Թե այդ գործում ագրոնոմներն ինչպես կարող են օգնել կոլխոզնիկներին, այդ կարելի է ցույց տալ հենց Կիրովականի շրջանի գյուղական ագրոնոմների աշխատանքից վերցրած մի շարք օրինակներով։

Անցյալ տարի շրջանի Մակարաշեն գյուղի կոլխոզն իր այգիներից շատ աննշան բերք ստացավ։ Կոլխոզնիկների մի մասի մեջ այն կարծիքն էր տիրում, որ այդ անբերրիությունը անժամանակ ցրտերի ու անձրևների հետևանք էր։ Կոլխոզի լավագույն ագրոնոմներից Ավետիք Բաղյանն իր զրույցներից մեկը նվիրեց այդ հարցին։ Նա

համագյուղացիների ուշադրությունը դարձրեց հարևան կոլխոզների այգիների վրա, որտեղ նույն պայմաններում անցյալ տարի բարձր բերք ստացվեց:

— Ահա ձեզ օրինակ Շահումյանի անվան սովխոզը, որը գտնվում է մեր շրջանում և մեզանից ընդամենը 15 կիլոմետր է հեռու, —ասաց նա,—աշխարհագրական դիրքով նա ավելի բարձր է, տարածությունն ավելի մեծ, ծառերի ավելի շատ տեսակներ ունի, բայց այնտեղ անցյալ տարի յուրաքանչյուր հեկտարից ստացվեց մինչև 60 ցենտներ խնձոր և տանձ: Վերցնենք հենց Խնձորուտի Օրջոնիկիձեի անվան կոլխոզը: Անցյալ տարի նրանք նույնպես լավ բերք ստացան: Հարևան՝ Գյոզալդարայի այգիները բերք տվեցի՞ն, իհարկե:

— Մենք էլ մի ժամանակ հայտնի էինք մեր գործերով: Մեր մշակած միչուրինյան խնձորներով և տանձով Մակար բիձեն մինչև Մոսկվա հասավ,— ասաց ունկնդիրներից մեկը:

— Ուրեմն ո՞րն էր պատճառը,— կրկին հարցրեց ագիտատորը: Պատճառը վատ խնամքն էր. այն, որ հսկայական այգին թողնվեց անմշակ: Այն, որ ժամանակին չկի-



րառվեցին առաջավոր միչուրինյան մեթոդները:

Ագիտատորն սկսեց խոսել ռուս մեծ գիտնական Ի. Միչուրինի մասին, նրա ուսմունքի մասին և իր զրույցն ավարտեց Ի. Վ. Միչուրինի խոսքերով.

«Մենք չենք կարող ողորմածություն սպասել բնությունից, մեր խնդիրն է դա վերցնել նրանից»:

Այդ պարզ ու բովանդակալից զրույցը մեծ տպավորություն թողեց: Այդ օրերին տեղի ունեցած կոլխոզային ընդհանուր ժողովում, կոլխոզնիկները կոլխոզվարչությունից վճռականորեն պահանջեցին՝ բոլոր միջոցները ձեռք առնել այգու մշակությունը բարելավելու, միչուրինյան առաջավոր մեթոդները կիրառելու համար: Մակարաշենցիներն այժմ եռանդուն կերպով ձեռնամուխ են եղել իրենց այգու վերականգնման գործին, նրա խնամքին ու մշակմանը:

Օգտագործելով միչուրինյան ուսմունքը, շրջանի կոլխոզնիկները հատուկ խնամք են տանում ցանքերի նկատմամբ: Խնձորուտի Օրջոնիկիձեի անվան կոլխոզի անվանի ճակընդեղագործուհի Ա. Հովհաննիսյանը, իրեն հատկացված հողամասում ցանելու համար ամեն տարի ընտրում է առանձին, լավորակ

տեսակի սերմացուներ, որոնցից բարձր բերք է ստացվում։

Խնձորուտ գյուղի կոլտնտեսականները շրջանում առաջին անգամ մշակեցին եգիպտացորեն և 2 հեկտարից ստացան 120 ցենտներ բերք, որը համարվում է ռեկորդային։ Այս տարի արդեն նոր, լավագույն սորտերի ընտրության միջոցով ցանված սերմերից սպասվում է բարձր բերք՝ 15 հեկտար տարածությունից։ Կոլտնտեսականները, փորձով համոզվելով միչուրինյան ուսմունքի ճշտության մեջ, այն մեծ չափով կիրառում են իրենց պրակտիկայում։ Այդ բանում քիչ բաժին չունեն կոլտնտեսային ագիտատորները։ Ագիտատորներն իրենց և հարևան կոլտնտեսություններից վերցրած փաստերի հիման վրա կոլտնտեսականներին ցույց են տալիս, թե ինչպիսի հարուստ բերք է սպասվում միչուրինյան ուսմունքի կիրառման շնորհիվ։

Մեծ մասամբ օրինակ է բերվում Ստ. Շահումյանի անվան պտղաբուծական սովխոզը, որն անցյալ տարի տվեց առատ բերք։ Ծովի մակերևույթից մինչև 2000 մետր բարձրության վրա տարածված այդ այգիներում դեռ ուշ աշնանը պահպանվում էին միչուրինյան խնձորի ու տանձի շատ տեսակներ։



Սովխոզի գյուղատնտես ընկ. Գրիգոր Դախոլյանը, միչուրինյան սորտերի տարածման լավագույն ագիտատորն է։ Նրա զրույցներն այգեգործները լսում են մեծ հետաքրքրությամբ, որովհետև դրանք կապված են լինում կոնկրետ գործի հետ, հիմնավորվում են փորձով։ Միչուրինյան տեսակների նկատմամբ հատուկ հոգատարություն ու խնամք են տանում սովխոզի № 1 և № 4 բրիգադների այգեգործները, որտեղ իբրև ագիտատորներ են աշխատում Ս. Գինոսյանը և Մ. Բաղրամյանը։

Այժմ հաճախ են ագիտատորները օրինակներ բերում նաև Խնձորուտի Օրջոնիկիձեի անվան կոլտնտեսությունից, որտեղ հատկապես վերջին 2 տարվա ընթացքում հետաքրքիր գործեր են կատարվում։ Խնձորուտում անցյալ տարի ստացան 3 անգամ ավելի բերք, քան նախորդ տարիներին։ Ամեն մի հեկտարից խնձորուտցիները հավաքեցին 4—5 տոննա միրգ։

Լերմոնտովո գյուղի կոլտնտեսականների մեջ մեծ հարգանք է վայելում դպրոցի դիրեկտոր, կոմունիստ ընկ. Ա. Արշակունին։ Հաճախ կարելի է տեսնել ընկ. Արշակունուն կոլտնտեսային ակումբում գյուղատնտեսության առաջավոր ուսմունքների մասին զրույց

անցկացնելիս։ Կոլտնտեսականները մեծ հետաքրքրությամբ են լսում նրան։ Նա խոսում է հետաքրքիր և ամեն անգամ ունկնդիրներին հաղորդում է նոր, կարևոր բաներ։ Ընդամենը մեկ ամիս առաջ էր, որ նա զրույց սկսեց այգեգործությունից։ Կոլտնտեսականներից մեկը ցավալով խոսեց իրենց պտղատու այգիների սակավության մասին։ «Մեր տեղը ցուրտ է, ձյունն էլ երկար է նստում, ծառերը ժամանակին չեն բացվում— ահա և բերք չեն տալիս»,— ասաց նա։

Հենց այդտեղ ընկ. Արշակունին սկսեց հերքել կոլտնտեսականի այդ սխալ կարծիքը և բազմաթիվ օրինակներով ապացուցեց, որ լավ մշակության և սորտերի ճիշտ ընտրության միջոցով Լերմոնտովոյում հնարավոր է և՛ խնձորի, և՛ տանձի առատ բերք ստանալ։ Նա պատմեց Իվան Վլադիմիրովիչ Միչուրինի մասին, խոսեց հյուսիսում աճող խաղողի մասին, «բեր» տեսակի համեղ տանձի մասին։

Հաջորդ օրը ընկ. Արշակունին դպրոցից բերեց բազմաթիվ նկարներ, քարտեզներ և կոլտնտեսականներին ցույց տվեց այն միջոցները, որոնք կիրառելով կարելի է բարձր բերք ստանալ։

Այժմ Լերմոնտովոյի կոլխոզը ձեռք է բե-



րել բավականին թվով տունկիներ և խնամում է դրանք։ Ագիտատորի զրույցներն օգնեցին նաև, որ կոլտնտեսականները գարնանացանի ժամանակ հացահատիկի, կարտոֆիլի, շաքարի ճակնդեղի և բանջարանոցային կուլտուրաների սերմերի ճիշտ ընտրություն կատարեն։ Լերմոնտովցիները ցանել են կարտոֆիլի այն տեսակները, որոնցից անցյալ տարի ստացվեց մինչև 300 ցենտներ բերք։

Ժդանովի, Խնձորուտի, Վահագնի, Զորագյուղի, Քարաբերդի, Մեղրուտի և մյուս գյուղերի կոլխոզների պարտիական բյուրոները մեծ տեղ են հատկացնում միչուրինյան գիտելիքների տարածմանն ու ագիտացիային։

Ա. ՍԱՐԳՍՅԱՆ



# ԻՆՉՊԵՍ ԱՆՑԿԱՑՆԵԼ ԶՐՈՒՅՑԸ ԱՐՏԱԴՐՈՒԹՅԱՆ ՆՈՐԱՐԱՐՆԵՐԻ ՓՈՐՁԻ ՓՈԽԱՆԱԿՄԱՆ ՇՈՒՐՋԸ

*Արտադրության նորարարները մեր դարաշրջանի առաջավոր մարդիկն են, կոմունիզմի կառուցման ակտիվ մարտիկները։ Արտադրության նորարարների ձեռք բերած հիանալի հաջողությունները ունեն պետական խոշոր նշանակություն։ Դրա համար էլ նրանց առաջավոր փորձի լայն մասսայականացումը և արտադրության մեջ ներդնումը հանդիսանում է ագիտատորների կարևորագույն խնդիրը։*

*Իսկ ինչպե՛ս, ի՛նչ ձևերով ու մեթոդներով պետք է ագիտատորները մասսայականացնեն, բանվորական լայն մասսաների սեփականությունը դարձնեն արտադրության նորարարների փորձը, նրանց նախաձեռնությունը։ Իրենց առջև դրված այդ խնդիրը կատարելու համար, ագիտատորները պետք է օգտագործեն ագիտացիայի բոլոր ձևերն ու*



*մեթոդները, ելնելով նրանից, թե յուրաքանչյուր կոնկրետ դեպքում ագիտացիայի ո՛ր ձևի գործադրումը ավելի նպատակահարմար է, ավելի շատ օգուտ կտա։*

*Առաջավորների փորձի շուրջը ագիտացիա անելու առանձնահատկությունն այն է, որ ագիտատորից պահանջվում է ամբողջովին տիրապետել այն բնագավառի, տեղամասի արտադրության տեխնիկային, որտեղ տանում է նա իր ագիտացիոն աշխատանքը։ Աշխատանքի նոր մեթոդների մասին խոսել, դրանք ներդնել, այդ նշանակում է առաջ շարժել տեխնիկան, այդ իսկ պատճառով էլ արտադրության նորարարների փորձի մասսայականացման համար ագիտատորը պետք է, որ ինքը նախօրոք լավ ուսումնասիրած լինի այդ փորձի ամբողջ էությունը և իր համար պարզի, թե իրենց մոտ ինչպես կարելի է կիրառել այդ նորարարական առաջարկությունը։*

*Փորձը ցույց է տալիս, որ ինչպես ագիտացիայի բոլոր բնագավառներում, այնպես և արտադրության նորարարների փորձի մասսայականացման գործում, ագիտատորները լավագույն արդյունքների են հասնում*

այն դեպքում, երբ կիրառում են բոլշևիկյան ագիտացիայի փորձված մեթոդը՝ կոնկրետ օրինակով մարդկանց ցույց տալ այն գործը, որը կատարելու համար նրանց կոչ է արվում, կենդանի խոսքով նրանց համոզել մեր երկրի հետագա բարգավաճման համար դրա ունեցած նշանակության մեջ։

Երրորդ տարին է, ինչ մեր Միության մետաղամշակման արդյունաբերության մեջ սկիզբ է առել և գնալով ավելի ու ավելի մեծ ծավալ է ստանում մետաղների գերարագ հատման մեթոդը։ Այդ մեթոդի նախաձեռնողը հանդիսացավ Լենինգրադի անվանի խառատ, Ստալինյան մրցանակի լաուրեատ Հ. Բորտկևիչը։

Մեր ռեսպուբլիկայում Բորտկևիչի նախաձեռնությանը առաջին արձագանքողներից հանդիսացան Երևանի Ձերժինսկու անվան Դազգահաշինական գործարանի բանվորները։ Այստեղ այդ գործն սկսվեց հետևյալ կերպ. գործարանի տեխնիկական բաժինը մշակեց կտրիչների նոր ձևեր, որոշեց կտրող դազգահների պտույտների նոր ռեժիմը։ Ապա կատարվեցին գերարագ հատման առաջին փորձերը, որոնք լավ արդյունք տվեցին։



Թվում է, թե այս ամենից հետո մնում էր, որ դիրեկցիան կարգադրություն աներ բանվորներին և նրանք անցնեին գերարագ հատման։ Բայց նոր և լուրջ գործին այդպիսի մոտեցումը արդյունք չէր տա։ Գործարանի դիրեկցիան և պարտկազմակերպությունը որոշեցին բանվորների մեջ լայնորեն մասսայականացնել գերարագ հատման մեթոդը, յուրաքանչյուր բանվորի ցույց տալ, թե նա իր դազգահի վրա ի՛նչպես պետք է անցնի գերարագ հատման, ի՛նչ պետք է անի դրա համար։

Այդ նոր նախաձեռնության մասսայականացման գործը գործարանի պարտկազմակերպությունը դրեց ագիտատորների վրա, վստահ, որ նրանք, որպես տեխնիկայի տիրապետած, արտադրության առաջավոր մարդիկ հաջողությամբ կկատարեն իրենց տրված առաջադրանքը։ Պարտիական կազմակերպությունը միաժամանակ ցուցում տվեց ագիտատորներին, որ մետաղների գերարագ հատման մեթոդով աշխատելու համար տարվող ագիտացիան չպետք է կրի կամպանիոն բնույթ, նրա ներդնման ու գնալով ավելի կատարելագործման համար ագիտատորները

պետք է ագիտացիա անեն միատեմպային
կերպով։
Եվ ահա, առաջնորդվելով պարտիական
կազմակերպության ցուցումներով, ագիտա-
տորներն իրենց աշխատանքում զգալի հա-
ջողությունների հասան։ Այսպես, օրինակ,
2-րդ ցեխի ագիտատոր ընկ. Ա. Օվիկյանը,
որը ցեխի հերթափոխի վարպետն է և իր
գործի լավագույն մասնագետ, մետաղների
գերարագ հատման հարցին նվիրված իր ա-
ռաջին զրույցին նախապատրաստվեց շատ
խնամքով և բազմակողմանիորեն։ Նա կար-
դաց այդ հարցի վերաբերյալ մամուլում հը-
րապարակված նյութերը, ուսումնասիրեց Հ.
Բորտկևիչի աշխատանքի փորձը, ինքն ան-
ձամբ պատրաստեց մի քանի արագահատ
կտրիչներ և փորձեց ցեխի դազգահների վրա։
Այդ կտրիչները, ինչպես նաև մի քանի դի-
տողական պարագաներ, նա բերել էր զրույ-
ցի ժամանակ բանվորներին ցույց տալու։
Որքան էլ համոզիչ էին ագիտատորի փաս-
տարկումները, այնուամենայնիվ, բանվորնե-
րը, որոնք համարյա թե բոլորն էլ երիտա-
սարդ էին, շատ տարակուսանքով վերաբեր-
վեցին այդ նորամուծությանը։ Նրանք դըժ-



վարանում էին պատկերացնել, որ մետաղը
կարելի է այդպիսի բարձր արագությամբ
հատել։

Երիտասարդ բանվորների այդ տարակու-
սանքը ագիտատոր Օվիկյանի համար ան-
սպասելի չէր և նա պատրաստ էր այն փա-
րատելու։

Նա բանվորներին տարավ երիտասարդ
խառատ Ս. Հարությունյանի դազգահի մոտ,
նրան տվեց գերարագ հատման կտրիչը, մը-
շակվելիք մասը և առաջարկեց այն հատել
մեկ րոպեում երկու և կես անգամ ավելի ա-
րագ պտույտներով, քան մինչև այժմ այդ
արվել է։ Եվ ահա բանվորների հայացքների
տակ խառատ Հարությունյանը դազգահի
այդ մասը պատրաստեց երեք անգամ ա-
վելի քիչ ժամանակում, քան նախատեսված
էր նորմայով։

Հենց այդտեղ գերարագ հատման մեթոդով
աշխատելու ցանկություն հայտնեցին մյուս
բանվորները։ Բայց ագիտատորը նրանց նա-
խազգուշացրեց, որ այդ մեթոդին անցնելն
այնքան էլ հեշտ չէ, պետք է նրան լուրջ
կերպով նախապատրաստվել և որ ինքն այդ
մասին կխոսի ցեխի վարիչի հետ։

Այնուհետև ագիտատոր Օվիկյանը գերարագ հատման մեթոդի վերաբերյալ իր զրույցները շարունակ անց էր կացնում որևէ բանվորի դազգահի մոտ, ինչպես դազգահի տիրոջը, այնպես և մյուս ունկնդիրներին բացատրելով, թե ինչպես պետք է անցնել այդ նոր մեթոդով աշխատելուն։ Շատ ժամանակ չանցած ցեխի այդ հերթափոխի խառատների մեծ մասն անցավ գերարագ հատման։

Երբեմն մեր ագիտատորներից ոմանք, երբ հայտնի է դառնում և սկսում է ծավալվել նորարարական մի նոր նախաձեռնություն, դժվարանում են իրենց համար պարզել նրա էությունը և այն հարցը, թե այդ նախաձեռնությունն իրենց մոտ կենսագործելի՞ է, թե՞ ոչ։ Այստեղ ագիտատորներին օգնության պետք է գան, իհարկե, ագիտկոլեկտիվները, պարտիական կազմակերպությունները։

Բայց ագիտատորը պետք է միշտ հիշի, որ եթե մեր երկրում որևէ նորարարական նախաձեռնություն արագ կերպով մասսայականանում է, ապա այդ հետևանք է նաև այն բանի, որ մեր, սոցիալիստական արդյունա-



բերության մեջ, նրա բոլոր ճյուղերում դրա համար մինչ այդ ստեղծվել էին անհրաժեշտ նախապայմանները։ Այդ սոցիալիստական արդյունաբերության, ինչպես նաև սովետական մարդկանց աշխատանքի օրինաչափություններից մեկն է։

Բացի այդ, ագիտատորը պետք է միշտ նկատի ունենա՝ որքան էլ որ մեծ ու համաժողովրդական, համապետական լինեն նորարարական նախաձեռնության արդյունքները, այդ նախաձեռնության ելակետը, նրա կիրառումը միշտ շատ պարզ է ու հանրամատչելի սովետական ամեն մի աշխատավորի համար։ Այդպես, շատ պարզ էին և ամենուրեք կիրառելի բարձրորակ արտադրանք տալու վերաբերյալ Ալեքսանդր Չուտկիխի նախաձեռնությունը, հումքը խնայողաբար ծախսելու վերաբերյալ Մարիա Ռոժնևայի և Լիդիա Կոնոնենկոյի նախաձեռնությունը, հումքի կոմպլեքսային խնայողություն տալու վերաբերյալ Լիդիա Կորաբելնիկովայի ու Ֆեոդոր Կուզնեցովի և ուրիշ շատ նորարարների նախաձեռնությունները։

Ուրեմն, ծանոթանալով ամեն մի նորարարական նախաձեռնության հետ, ագիտատորը պետք է նայի իր շուրջը՝ վստահ, որ այդ նախաձեռնության կիրառման համար իրենց բրիգադայում, ցեխում բոլոր պայմանները կան։ Այդ պայմանները հայտաբերելով և իր զրույցները բրիգադայի, ցեխի աշխատանքից վերցրած կոնկրետ օրինակների հիման վրա անցկացնելով, բանվորներին փորձով համոզելով, ագիտատորը կկարողանա միանգամայն արդյունավետ կերպով ագիտացիա անել արտադրության նորարարների փորձի շուրջը։

Լ. ԳԱՐԻԲՅԱՆ



## ԱՃՈՒՄ ԵՎ ԱՄՐԱՊՆԴՎՈՒՄ Է ԽԱՂԱՂՈՒԹՅԱՆ ԿՈՂՄՆԱԿԻՑՆԵՐԻ ՃԱԿԱՏԸ

Ժամանակակից միջազգային կյանքի կարևորագույն ֆակտորներից մեկը խաղաղության համար ծավալված հզոր շարժումն է, որն ուղղված է նոր պատերազմի անգլո-ամերիկյան հրձիգների դեմ։

Դեռևս 1948 թվականի աշնանը, խոսելով Չերչիլի և նոր պատերազմի հրահրման գծով նրա համախոհների մասին, ընկեր Ստալինը, տալով խաղաղության կողմնակիցների և խաղաղության հակառակորդների ուժերի դասավորման խոր վերլուծությունը, ասել է.

«Չափազանց կենդանի են ժողովուրդների հիշողության մեջ վերջին պատերազմի սարսափները և չափազանց մեծ են խաղաղության կողմնակից հասարակական ուժերը, որպեսզի ագրեսիայի գծով Չերչիլի աշակերտները կարողանային դրանք հաղթահարել և շուռ տալ նոր պատերազմի կողմը»։

Սովետական ժողովրդի և ամբողջ աշխատավոր մարդկության առաջնորդ ընկեր

Ստալինի այս խոսքերը փայլուն կերպով հաստատվեցին իրադարձությունների հետագա ամբողջ ընթացքով։

Բոլոր երկրների աշխատավորները, կոմունիստական պարտիաների ղեկավարությամբ, պայքարի դուրս եկան խաղաղության համար։ Ամբողջ աշխարհի աշխատավորները լավ գիտակցում են, որ անգլո-ամերիկյան իմպերիալիստների ու նրանց կամակատարների կողմից նյութվող նոր պատերազմը պատրաստվում է անգլո-ամերիկյան իմպերիալիզմի տիրապետություն հաստատելու նպատակով, ամբողջ աշխարհը Ուոլ-ստրիտի մագնատներին ստրուկ դարձնելու նպատակով։

Աշխարհի ժողովուրդները չեն մոռացել երկրորդ համաշխարհային պատերազմի սարսափները, մի պատերազմ, որ գերմանական ֆաշիստները և ճապոնական իմպերիալիստները հրահրեցին ԱՄՆ-ի, Անգլիայի, Ֆրանսիայի իմպերիալիստների օգնությամբ։

Երկրորդ համաշխարհային պատերազմի ավարտումից հետո քիչ ժամանակ է անցել, իսկ ամերիկյան իմպերիալիստները պատրաստում են նոր ագրեսիվ պատերազմ և այդ նպատակով ստեղծում են զանազան



ռազմական բլոկներ ու դաշինքներ, որոնք սպառնում են ժողովուրդների անվտանգությանը։ Մարշալլի պլանով «օգնություն» ցույց տալու պատրվակով ամերիկյան իմպերիալիստներն ստրկացնում են արևմտաեվրոպական երկրները։

1948 թվականին ԱՄՆ-ի հովանավորությամբ ստեղծվեց այսպես կոչված «Արևմըտյան դաշինք», որի կազմի մեջ մտնում են Անգլիան, Ֆրանսիան, Բելգիան, Հոլանդիան և Լյուքսեմբուրգը։ 1949 թվականին ամերիկյան իմպերիալիստները ստեղծեցին ավելի լայն ագրեսիվ բլոկ, կնքելով այսպես կոչված Հյուսիս-Ատլանտյան ագրեսիվ պակտը, որին մասնակցում են 12 պետություն (ԱՄՆ, Կանադա, Անգլիա, Ֆրանսիա, Բելգիա, Հոլանդիա, Լյուքսեմբուրգ, Նորվեգիա, Դանիա, Իսլանդիա, Փորթուգալիա և Իտալիա)։ Այդ ագրեսիվ ռազմական բլոկը կնքված է ուղղակի ի խախտումն ՄԱԿ-ի կանոնադրության և ուղղված է, առաջին հերթին, Սովետական Միության ու ժողովրդական դեմոկրատիայի երկրների դեմ։ Այդ պակտին մասնակից են արված Փորթուգալիան ու Իտալիան—պետություններ, որոնք ՄԱԿ-ի անդամներ չեն։ Ստեղծված է Ատ-

յանտյան պակտի մասնակիցների միացյալ շտաբ և ռազմական խորհուրդ։

Ամերիկյան հրամանատարությունը վերապատրաստում և վերակառուցում է արևմտա-եվրոպական պետությունների բանակները, նպատակ ունենալով դրանք դարձնել ամերիկյան իմպերիալիզմի զավթողական քաղաքականության գործիք, ագրեսիայի գործիք։ Ամերիկյան իմպերիալիստները իրենց ռազմական բազաները և հենակետերն են ստեղծում աշխարհի տարբեր մասերում։ Ամերիկյան իմպերիալիզմի ամբողջ գործունեության նպատակն է քայքայել խաղաղության գործը, հրահրել նոր պատերազմ։

Ամերիկյան իմպերիալիստները սպառնալով ատոմային ռումբով, նորից փորձում են մարդկությանը նետել նոր պատերազմի սոսկալի աղետների մեջ, նպատակ ունենալով հաստատել իրենց համաշխարհային տիրապետությունը։

Հինգ տարի առաջ, հիտլերյան իմպերիալիզմի դեմ Սովետական Միության տարած պատմական հաղթանակի շնորհիվ, աշխարհի ժողովուրդները ազատվեցին ֆաշիստական լծից և երկրորդ համաշխարհային պատերազմի սարսափներից։

Սովետական ժողովրդի պատմական հաղ-



թանակն արտասահմանյան մի շարք երկրների հնարավորություն տվեց վերջ տալու կապիտալիստական կարգին և թևակոխելու նոր ուղի, որը տանում է դեպի սոցիալիզմ։ Այդ երկրները՝ ժողովրդական դեմոկրատիայի երկրները՝ այժմ ընթանում են դեմոկրատիայի ու սոցիալիզմի լուսավոր ուղիով, խաղաղության ուղիով։

Խաղաղության պաշտպանների գլուխը միշտ կանգնած է եղել և կանգնած է Սովետական Միությունը։ Սովետական պետության ամբողջ քաղաքականությունը, նրա ծագման առաջին իսկ օրից, ուղղված է ի պաշտպանություն խաղաղության։ Դրանով իսկ Սովետական պետության քաղաքականությունը պաշտպանում է բոլոր ժողովուրդների շահերը, որովհետև իմպերիալիստների հրահրած պատերազմներից ամենից ավելի տուժում են ժողովուրդները, այն ժամանակ, երբ կապիտալիստներն ու կալվածատերերը հարստանում են ժողովրդի թշվառության հաշվին։ Սովետական արտաքին քաղաքականությունը և դիվանագիտությունը, կատարելով ընկեր Ստալինի ցուցումները, երկրորդ համաշխարհային պատերազմից հետո ակտիվ գործունեություն ծավալեցին ի պաշտպանություն խաղաղու-

թյան, որը ձեռք է բերված այնպիսի թանդ գնով: Սովետական պետության ներկայացուցիչները բազմիցս Միավորված ազգերի կազմակերպությունն էին մտցնում առաջարկություններ, որոնք պահանջում էին կրճատել բոլոր պետությունների, և առաջին հերթին, մեծ տերությունների զինված ուժերը, արգելել ատոմային զենքը և էֆեկտիվ վերահսկողություն հաստատել ատոմային էներգիայի վրա: Այս առաջարկությունները, որ վիժեցնում էին անգլո-ամերիկյան բլոկի ներկայացուցիչները, շարունակ ողջունվում էին բոլոր երկրների աշխատավորական լայն մասսաների կողմից, որոնք հանձինս Սովետական կառավարության առաջարկությունների տեսնում էին խաղաղության ամրապնդման գործունակ միջոց:

Սովետական Միությունը խաղաղության ամուր հենարան է և դրա համար էլ սովետական տերության հզորության աճը, սովետական ժողովրդի հսկայական հաջողությունները ՍՍՌՄ ժողովրդական տնտեսության վերականգնման ու զարգացման գործում, նպաստում են խաղաղության գործի ամրապնդմանը ամբողջ աշխարհում և խանգարում պատերազմի հրձիգների հանցա-



գործ պլանների իրականացմանը: Սովետական Միության հետ միասին խաղաղության համար ակտիվորեն պայքարում են նաև ժողովրդական դեմոկրատիայի երկրները, որոնց ժողովուրդները, իմպերիալիզմի ճնշումից ազատագրված, հաստատապես կանգնել են դեմոկրատիայի ու սոցիալիզմի լագերում:

Սակայն այն երկրների աշխատավորներն էլ, որտեղ տիրապետում է կապիտալը, ակտիվ պայքար են ծավալել խաղաղության համար, նոր պատերազմի դեմ: Կապիտալիստական երկրների աշխատավորները չեն ուզում զոհ և գործիք դառնալ իմպերիալիստների ձեռքին, որոնք ուզում են նրանց դարձնել թնդանոթային միս:

Խաղաղության համար պայքարող ուժերի համախմբման գործում մեծ դեր կատարեցին խաղաղության կողմնակիցների միջազգային կոնգրեսները, որոնք տեղի ունեցան 1949 թվականի ապրիլին Փարիզում և Պրագայում: Այդ կոնգրեսները, որոնք խոսում էին 600 միլիոն մարդկանց անունից, ցույց տվին խաղաղության համար պայքարող դեմոկրատական ուժերի աննախընթաց աճը:

Այն ժամանակ էլ ստեղծվեց Խաղաղության կողմնակիցների Համաշխարհային կոնգրեսի

*Մշտական կոմիտեն, որն ամենօրյա պայքար է մղում բոլոր խաղաղասեր ուժերը համախմբելու համար։ Խաղաղության կողմնակիցների շարժումը միավորում է աշխատավորության լայն խավերին, բոլոր ազնիվ առաջավոր մարդկանց, որոնք գիտակցում են նոր պատերազմի վտանգը մարդկության համար։ Խաղաղության համար պայքարողների առաջին շարքերում են գտնվում կոմունիստական պարտիաները, որոնք միշտ պաշտպանում են աշխատավորության շահերը։ Խաղաղության շարժման մեջ ակտիվորեն մտել են նաև կապիտալիստական երկրների առաջավոր ինտելիգենցիայի ներկայացուցիչները, որոնք հարել են Սովետական Միության գլխավորած խաղաղության ու դեմոկրատիայի լագերին։ Այդ առաջավոր մարդկանց թվին է պատկանում ֆրանսիական ականավոր ֆիզիկոս Ֆրեդերիկ Ժոլիո-Կյուրին, որը ներկայացնում է այն ազնիվ գիտնականներին, որոնք չեն ուզում պատերազմի հրձիգների գործակիցները լինել։*

*Խաղաղության կողմնակիցների միջազգային կոնգրեսից հետո անցած մեկ տարվա ընթացքում դեմոկրատական լագերն է՛լ ավելի է ուժեղացել և ամրապնդվել։ Այդ ժամանակվանից խաղաղության և դեմոկրա-*



*տիայի լագերին ամուր կերպով հարեց իմպերիալիստների լծից ազատագրված և իր ժողովրդական ռեսպուբլիկան ստեղծած 475 միլիոնանոց չին ժողովուրդը։*

*Սովետական Բանակի ուժերով հիտլերյան բռնապետության ոչնչացումը գերմանական ժողովրդին ազատագրություն բերեց ֆաշիստական ստրկությունից և հնարավոր դարձրեց Գերմանական դեմոկրատական ռեսպուբլիկայի կազմակերպումը։ Ընկեր Ստալինը բարձր գնահատեց Գերմանական դեմոկրատական ռեսպուբլիկայի ստեղծումը, այն բնութագրելով որպես շրջադարձային կետ Եվրոպայի պատմության մեջ, որովհետև գերմանական ժողովուրդը աներկդիմի արտահայտեց խաղաղության, ՍՍՌՄ-ի ու մյուս խաղաղասեր ժողովուրդների հետ համագործակցության իր կամքը, իսկ այդ նշանակում է, որ անգլո-ամերիկյան իմպերիալիստներին այլևս չի հաջողվի Գերմանիան դարձնել ագրեսիայի օջախ, գերմանական ժողովրդին՝ թնդանոթային միս։*

*Այսպիսով, Գերմանական դեմոկրատական ռեսպուբլիկան դարձավ խաղաղության կարևորագույն գործոն Եվրոպայում։*

*Խաղաղության շարժման ընդլայնման և ամրապնդման համար մեծ նշանակություն*

ունեցան Խաղաղության կողմնակիցների Համաշխարհային կոնգրեսի Մշտական կոմիտեի երրորդ սեսիայի որոշումները։ Այդ սեսիան տեղի ունեցավ Ստոկհոլմում 1950 թվականի մարտի 15—19-ին։ Սեսիան միաձայն ընդունեց կոչ հետևյալ բովանդակությամբ.

«Մենք պահանջում ենք անպայման արգելել ատոմային զենքը որպես ագրեսիայի և մարդկանց մասսայական ոչնչացման զենք, և միջազգային խիստ վերահսկողություն հաստատել այս որոշման կատարման նկատմամբ։

Մենք պատերազմի հանցագործ կհամարենք այն կառավարությունը, որն առաջինը ատոմային զենք կգործադրի որևէ այլ երկրի դեմ։

Մենք ամբողջ աշխարհի բոլոր բարի կամքի մարդկանց կոչ ենք անում ստորագրել այս կոչը»։

Այս պահանջները համապատասխանում են բոլոր երկրների ժողովրդական մասսաների ամենակենսական շահերին, որովհետև ատոմային ռումբն ագրեսիայի, խաղաղ մարդկանց մասսայական ոչնչացման զենք է։ Խաղաղության կողմնակիցների համաշխարհային կոնգրեսի Մշտական կոմիտեի



Ստոկհոլմի սեսիայի որոշումները նշանակում են, որ խաղաղության շարժումը թևակոխել է իր զարգացման նոր կարևոր փուլը։ Ներկա էտապում խաղաղության շարժման մեջ կենտրոնական տեղ է գրավում Խաղաղության կողմնակիցների Համաշխարհային կոնգրեսի Մշտական կոմիտեի Ստոկհոլմի սեսիայի կոչի տակ ստորագրություններ հավաքելու կամպանիան։ Այդ կոչը միահամուռ պաշտպանություն գտավ բոլոր երկրների ժողովրդական մասսաների կողմից. այդ է վկայում ստորագրությունների հաջող հավաքումը։ Միլիոնավոր մարդիկ իրենց ստորագրությունը դնելով Մշտական կոմիտեի կոչի տակ, դրանով իսկ իրենց ձայնը բարձրացնում են ի պաշտպանություն խաղաղության, ընդդեմ սպառազինության մրցավազքի, որ անց են կացնում պատերազմի հրահրիչները։

Ռումինիայում կոչն ստորագրել են ավելի քան 7 միլիոն մարդ, Բուլղարիայում համարյա ամբողջ չափահաս բնակչությունը (ավելի քան 5 միլիոն մարդ)։ Միլիոնավոր մարդիկ Լեհաստանում և Չեխոսլովակիայում իրենց ստորագրություններն են դրել Մշտական կոմիտեի կոչի տակ։ Ավելի քան 15 միլիոն մարդ ստորագրել են Գերմանա-

կան դեմոկրատական ռեսպուբլիկայում։ Արևմտյան Գերմանիայում, չնայած անգլո-ամերիկյան օկուպանտների տեռորին, ստորագրությունների հավաքումը նույնպես հաջող է ընթանում։ Ստորագրություններ հավաքելու կամպանիան ավելի ու ավելի լայնորեն է ծավալվում Ֆրանսիայում, Իտալիայում և մյուս կապիտալիստական երկրներում։ Արդեն հավաքված է ավելի քան հարյուր միլիոն ստորագրություն։

Այսպիսով, պատերազմի սանձազերծ հրրձիգները, որոնք պատրաստում են նոր ըսպանդ՝ ատոմային զենքի կիրառմամբ, լուրջ նախազգուշացում ստացան շատ միլիոնավոր աշխատավորների կողմից։ Իմպերիալիստները, եթե նրանք փորձեն ագրեսիվ պատերազմ սկսել, հարկադրված կլինեն իրենց կատարած հանցագործությունների համար պատասխան տալու իրենց ժողովուրդների առաջ։

Նման նախազգուշացման ուժն այն է, որ նրա ետև կանգնած են բազմամիլիոն ժողովրրդական մասսաներ, որոնք իրենց ստորագրություններն են դրել Մշտական կոմիտեի կոչի տակ։ Խաղաղության այդ շարժումը շարունակ աճում և ամրապնդվում է։ Արդեն



1950 թ. մարտ ամսին խաղաղության կողմնակիցների Համաշխարհային կոնգրեսի Մշտական կոմիտեի կազմի մեջ մտնում Չին խաղաղության պաշտպանության 52 ազգային կոմիտե։

Արևմտա-եվրոպական երկրներում և, առաջին հերթին, Ֆրանսիայում ու Իտալիայում ուշադրության արժանի է նավահանգրստային բանվորների ու երկաթուղայինների հերոսական պայքարը, որոնք հրաժարվում են բեռնաթափել ամերիկյան սպառազինությունը։ Ֆրանսիական նավահանգստային բանվորները վիժեցնում են ռազմական հանդերձանքի և ռազմամթերքի ուղարկումը Հնդկաչին, նպատակ ունենալով խանգարելու հանցագործ պատերազմը, որ ֆրանսիական իմպերիալիստները և նրանց ամերիկյան հովանավորները մղում են Վյետնամի դեմոկրատական ռեսպուբլիկայի ժողովրդի դեմ։

Իմպերիալիստները շարունակում են սպառազինությունների մրցավազքը, ագրեսիվ ռազմական պլանների մշակումը, ռազմական դաշնագրային բլոկների կնքումը։ Իմպերիալիստները բացեիբաց պատրաստվում են պատերազմի։ Այդ կապակցությամբ ցուցանշական է առանձին կառավարությունների և քաղա-

քական պարտիաների վերաբերմունքը Մշտական կոմիտեի կոչին։

Այսպես, ամերիկյան իշխանությունները վիզա չտվին միջազգային դելեգացիայի անդամներին, որը պետք է կոնգրեսին (ամերիկյան պառլամենտին) հանձներ Մշտական կոմիտեի Ստոկհոլմի սեսիայի կոչը։ Դրանով իսկ ամերիկյան իշխանությունները բացեիբաց հասկացնել տվին, որ իրենք խաղաղության հակառակորդներ են, ձգտում են հրահրել նոր պատերազմ։ Անգլիայում լեյբորիստական պրեմիեր-մինիստր Էտտլին հրաժարվեց ընդունելու խաղաղության կողմնակիցների դելեգացիան։ Դրանով իսկ լեյբորիստները ցուցաբերեցին իրենց թշնամական վերաբերմունքը խաղաղության գործին և իրենց երկրի աշխատավորների շահերին։

Մարդկության պատմության մեջ խաղաղության կողմնակիցները դեռևս երբեք այնպես կազմակերպված ու միավորված չեն եղել համաշխարհային մասշտաբով հզոր ճակատում, ինչպես այդ տեղի ունի այժմ։ Իմպերիալիստների ոտնձգություններին, որոնք ձգտում են կազմակերպել նոր պատերազմ, աշխատավորները պատասխանում են է՛լ ավելի մեծ չափով համախմբելով իրենց ուժերը, է՛լ ավելի մեծ չափով ակտիվացնելով



պայքարը խաղաղության պաշտպանության համար։

Խաղաղության կողմնակիցների շարժումը, որի շարքերում կան հարյուր միլիոնավոր մարդիկ, լուրջ խոչընդոտ է իմպերիալիստների ագրեսիվ պլանների իրագործմանը, որովհետև այդ շարժումը մոբիլիզացնում է ժողովուրդների այնպիսի ուժ, որը կարող է սանձահարել նոր պատերազմի ամեն տեսակ հրձիգներին։

Դեմոկրատիայի ուժերը վճռական պայքար են մղում խաղաղության համար, հանուն բոլոր երկրների ժողովուրդների շահերի։

Սովետական Միության ղեկավարած սոցիալիզմի, դեմոկրատիայի, խաղաղության լագերը, առաջավոր մարդկության հանճարեղ առաջնորդ ընկեր Ստալինի գլխավորությամբ, վճռական հաղթանակ կտանի ռեակցիայի ու պատերազմի սև ուժերի դեմ։

Լ. ՄԱՆԱՍԵՐՅԱՆ



# ՄԵՐ ԲԱՌԱՐԱՆԸ

*ԻՆՖԼԱՑԻԱ* — Տնտեսագիտական իմաստով երկրի շրջանառության մեջ միաժամանակ գտնվող թղթադրամի քանակի՝ տնտեսական շրջանառության համար անհրաժեշտ պահանջից, չափից ավելի ավելացումը (ուռճացումը) և այդ կապակցությամբ դրամի արժեքազրկումը։

*ՄԱԳՆԱՏՆԵՐ* — Տառացիորեն իշխողներ, խոշոր կապիտալիստներ, բանկային կապիտալի տիրակալներ, որոնք իրենց կամքը թելադրում են կապիտալիստական երկրների կառավարություններին և փաստորեն ղեկավարում երկիրը։

*ՕՐԲԻՏԱ* — Քաղաքական իմաստով՝ ազդեցության շրջան։

*ՌԵԿՈՆՍՏՐՈՒԿՑԻԱ* — Արմատական վերափոխում, վերակառուցում անցկացնել, ինչ որ բանի ստեղծումը նոր հիմքերի վրա, այսպես օրինակ, գյուղատնտեսության սոցիալիստական վերակառուցումը ինդուստրիալիզացիայի բազայի վրա և այլն։

*ՌԵՍՏԱՎՐԱՑԻԱ* — Վերականգնում, վերահաստատում, օրինակ, գեղարվեստական արժեքների վերականգնում։

*ՍՏԱՏՈՒՍ-ՔՎՈ* — Իրերի վիճակը, ինչպես որ կա, իրերի արդի վիճակը, օրինակ, ասվում է պահպանել



տվյալ պետության ստատուս-քվոն, այսինքն, այդ պետության համար պահպանել այն բոլոր պայմաններն ու սահմանները ինչպես որ եղել է, կա։

*ԴԻՖԵՐԵՆՑԻԱՑԻԱ* — Տարբերիչ, առանձնահատուկ, դիֆերենցիալ մոտեցում — տարբեր խնդիրներ լուծելիս ունենալ առանձնահատուկ մոտեցում. դիֆերենցիալ մատակարարում — մատակարարման գործի կազմակերպումը, նկատի ունենալով կոնտինգենտի տարբերական հատկանիշները։

*ՎԵՏՈ* — Արգելում, արգելք դնել։ Վետոյի իրավունքը Միավորված Ազգերի կազմակերպության մեջ՝ համաձայն ՄԱԿ-ի Կանոնադրության Անվտանգության խորհրդում ընդունված բոլոր որոշումները պետք է ընդունվեն միաձայն, իսկ եթե խորհրդի անդամ մեծ տերություններից մեկը չի համաձայնվում այդ որոշմանը, ապա նա «վետո» է դնում այդ որոշման վրա, որի հետևանքով այդ որոշումը համարվում է չընդունված։

*ԷՔՍՊԱՆՍԻԱ* — Ազդեցության շրջանի ընդարձակում, ներխուժել ուրիշ երկրներ, տնտեսական և քաղաքական էքսպանսիա։

*ԷՔՍՊՐՈՊՐԻԱՑԻԱ* — Ունեզրկում, սեփականազրկում, հարստահարիչներին սեփականազրկել։ Օրինակ, Մարքսի հայտնի դրույթն այն մասին, որ պետք է շահագործողներին էքսպրոպրիացիայի ենթարկել, խլել կապիտալիստներից նրանց սեփականությունը, սեփականազրկել նրանց։

*ԱԳՐԵՍԻԱ* — Հարձակում, հարձակվել ուրիշի երկրի

վրա. ագրեսիվ երկիր — մի երկիր, որը հարձակվում է ուրիշ երկրի վրա: Անգլո-ամերիկյան իմպերիալիստների կողմից կնքված «Հյուսիս-ատլանտյան պակտը» համարվում է ագրեսիվ պակտ, որովհետև նրա մասնակիցները և առաջին հերթին նրա կազմակերպիչները՝ ԱՄՆ-ը և Անգլիան պատրաստվում են հարձակվել ուրիշների վրա:

ՌԵԳԻՈՆԱԼ ՊԱԿՏ — Քաղաքական համաձայնություն, որը համախմբում է այնպիսի պետություններ, որոնք աշխարհագրական տեսակետից գտնվում են մեկ շրջանում: Այդպիսի պակտեր կարող են կնքվել զանազան հարցերի շուրջը — իրար հետ, կոնսուլտացիայի, չեզոքության, իրար վրա չհարձակվելու, փոխադարձ օգնության նպատակով:



# ՆՈՐ ԳՐՔԵՐ

Հայպետհրատի հրատարակությամբ լույս են տեսել.

Վ. Ի. ԼԵՆԻՆ.— Երկեր: 15-րդ հատոր, 644 էջ:

Վ. Ի. ԼԵՆԻՆ.— Երկեր: 16-րդ հատոր, 635 էջ:

Ի. Վ. ՍՏԱԼԻՆ.— Ազգային հարցը և լենինիզմը: 25 էջ, գինը 25 կոպ.:

Լ. Ն. ՏՈԼՍՏՈՅ.— Երկերի ժողովածու 9-րդ հատոր, 613 էջ, գինը 20 ռ.:

Մ. ԳՈՐԿԻ.— Երկերի ժողովածու: 4-րդ հատոր, 573 էջ, գինը 14 ռ. 20 կ.:

Գիտա-մասսայական գրադարանի սերիայով

Պրոֆ. Գ. Ս. ԳՈՐԵԼԻԿ և Մ. Լ. ԼԵՎԻՆ.— Ռադիոլոկացիա: 44 էջ, գինը 1 ռ.:

Վ. Գ. ՕԽՈՏՆԻԿՈՎ.— Մագնիսներ: 40 էջ, գինը 70 կոպ.:



Պատասխանատու խմբագիր՝ Ռ. ԽԱՉԱՏՐՅԱՆ